# ՀԵԹԱՆՈՍ ՀԱՅԱՍՏԱՆԸ

## ՈՒԹ ՄԵՀԵԱՆՆԵՐՆ

Digitized by Google

ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ԼԵ.

# ՀԵԹԱՆՈՍ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՈՒԹ ՄԵՀԵԱՆՆԵՐՆ

ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1899.

Digitized by Google

474

# ՀԵԹԱՆՈՍ ՀԱՅԱՍՏԱՆԻ

## ՈՒԹ ՄԵՀԵԱՆՆԵՐՆ

ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍԻ ԵՒ Մ. ԽՈՐԵՆԱՑՒՈՑ

ՀԱՄԵՄԱՏ

48բ.

---

ՔՆՆԱԴԱՏԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ

Ա. ԿԱՐԻԷՐԻ

ԹԱՐԳՄԱՆԵՑ

Հ. ՅԱԿՈՎԲՈՍ Վ. ՏԱՇԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ

ԳՐԱԴԱՐԱՆ
ԳՐԻԳՈՐ ԱՐԾՐՈՒՆԻ
Կարգաթիւ 587

ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1899.

UNIVERSITY OF MICHIGAN LIBRARIES

Digitized by Google

# Ա Ջ Դ

Հայագէտն Կարիէրի լոյս հանած համառօտ բայց հայ բանասիրութեան համար կարեւոր գրուածքս[1] նուիրուած է այս տարւոյ (1899 Հոկտ.) Արեւելագիտաց ԺԲ. ընդհանուր Համաժողովին ի Հռովմ, միանգամայն ի յիշատակ Կարոլոսի Շէֆէր, որ Արեւելագիտաց ԺԱ. Համաժողովին (Պարիս) նախագահն էր[2]: Իւր համառօտութեան մէջ հետաքրքրական ուսումնասիրութիւն մըն է, ո՛չ թէ ընդհանրապէս Հայոց դիցաբանութեան մասին, այլ այն կրկին աղբերաց՝ որոնք գլխաւորաբար կը մատակարարեն մեզ նոյն նիւթոյ մասին մեր ունեցած դոյզն ծանօթութիւնները. այսինքն են Ագաթանգեղոս եւ Մ. Խորենացի: Գրքին եզրակացութիւնը կը ցուցնէ որ Հայագէտն ասով ըստ ինքեան շարունակած է իւր քննադատութեանց շարքն, զորոնք հրատարակած է Խորենացւոյ պատմագրութեան աղբերաց նկատմամբ. եւ որոնք լոյս տեսան թերթիս մէջ[3]: Այս պատճառաւ ան-

---

1 A. Carrière, Les huit Sanctuaires de l'Arménie payenne, d'après Agathange et Moïse de Khoren. Étude critique. Paris 1899. 8° pp. 29 (եւ 1 տախտակ.):

2 Ասոր Համար նուիրման էջ մը կայ գրքին սկիզբը, զոր յառաջ կը բերենք. Je présente cette étude au XII[e] Congrès international des Orientalistes (Rome), en la consacrant à la Mémoire de Charles Schefer, membre de l'Institut, administrateur de l'École des langues orientales vivantes, président du XI[e] Congrès international des Orientalistes (Paris) A. C.

3 Գլխաւորներն են A. Carrière, Moïse de Khorène et les Généalogies patriarcales. Paris 1891 (տես "Հանդէս" 1891, էջ 345 եւն): — A. C., Nouvelles Sources de Moïse de Khoren, études critiques. Vienne 1893, 8°

Digitized by Google

*Հրաժեշտ կը համարինք նոյնը ծանօթացընել մեր ըն-թերցողաց լիակատար թարգմանութեամբ:*

---

VIII+56. (Հայ՝ "Նորագոյն աղբերք Մ. Խորենացւոյ" եւն։ Վիեննա 1893. 8° էջք Ժ+51. "Ազգ. Մատ." Ը.) — A. C., Nouvelles Sources etc. Supplément, Vienne 1894. 8° VIII+40. (Հայ՝ "Նորագոյն աղբերք եւն. Յաւելուած։ Վիեննա 1894. 8° ԺԱ+43. "Ազգ. Մատ." ԺԴ։) — A. C. La légende d'Abgar dans l'histoire d'Arménie de Moïse de Khoren. Paris 1895. (Հայ՝ "Աբգարու զրոյցը Մ. Խորենացւոյ Պատմութեան մէջ" եւն. Թրգմ. Հ. Գար. Վ. Մենեվիշեան։ Վիեննա 1897. 8° էջք ԺԵ+107. "Ազգ. Մատ." ԻԲ։)

Digitized by Google

# ՀԵԹԱՆՈՍ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՈՒԹ ՄԵՀԵԱՆՆԵՐՆ

## ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍԻ ԵՒ Մ. ԽՈՐԵՆԱՑՒՈՅ

### ՀԱՄԵՄԱՏ

---

Հայոց հեթանոսական կրօնքն արդէն առարկայ եղած է բազմաթիւ գիտնական աշխատասիրութեանց: Որչափ ինծի ծանօթ է, ժամանակաւ վերջիններն են Հ. Ղ. Ալիշանի գործը՝ 1895ին հրատարակուած,[1] եւ Հ. Գելցէր ուսուցչապետին յիշատակագիրն՝ որ նոյն տարին ներկայացուած է Լայպցիգի Գիտութեանց արքունական ընկերութեան:[2] Մխիթարեան անխոնջ Հայրը ժողված է իւր գրքին մէջ այն ամէն տեղեկութիւնքն զորոնք կրցած է հաւաքել Հայոց հին կրօնին վրայ: Ենայի համալսարանին հռչակաւոր ուսուցչապետն՝ շատ աւելի սակաւաթիւ էջերու մէջ, բայց աւելի ապահով եւ աւելի խստադատ յօրինուածութեամբ՝ գործածած է իւր ընդարձակ ծանօթութիւնքն եւ իւր քննադատական հանճարը՝ ներկայացընելու

---

1 "Հին հաւատք Հայոց", Վենետ. 1895, էջք 522:

2 H. Gelzer, Zur armenischen Götterlehre, ի գիրս Berichte der Königl. Sächs. Gesellschaft der Wissenschaften, 1896, p. 99—148. — Թրգմ. ի հայ՝ Հ. Յ. Թորոսեան՝ "Դիցաբանութիւն Հայոց", ի "Բզմ.", 1897 էջ 16, 63, 176, 353, 425, 474 եւն:

Digitized by Google

մեզի հայկական ամենադից կաճառին (Պանթէոն) այնպիսի պատկեր մ՚որ շատ գերազանց է մեր ցայժմ ունեցածէն։ Որչափ ալ յանձնարարենք՝ քիչ է, կրօնական պատմութեան ուսմանց բարեկամներուն՝ կարդալ այս երկու հոյակապ գործերն, որ կը նպաստեն լուսաբանելու նիւթ մ՚որ այս ամէնէն ետքն ալ տակաւին մութ կը մնայ։

Արդեամբք ալ դժուար է ցայժմ ստացուած արդիւնքներն իբրեւ լիովին գոհացուցիչ համարիլ։ Կը զգանք որ անհաստատ, անստոյգ, անորոշ բան մը կայ, որ մի միայն աղբիւրներուն ցանցառութենէն եւ աղքատութենէն յառաջ չի գար։ Պակսածն է հետազօտութեան համար ապահով խարիսխ մը, բացորոշ գծուած մեկնակէտ մը։ Ասոր համար բազմաթիւ եզրակացութիւններ, որ հիմնուած են կղզիացած՝ երբեմն մի միակ տեղերու վրայ, չեն կրնար դիմանալ քիչ մ՚աւելի խիստ քննադատութեան առջեւ։ Ըսածնիս պարսաւ մը չէ, որ ուղղուած ըլլայ այն երկու գիտնոց զորոնք վերը յիշեցինք։ Եթէ անոնք աւելի կատարելապէս չեն յաջողած, պատճառն այն է որ անոնց անկարելի էր աւելի լաւն ընել։ Պակասութիւնը հոս այն է՝ որ հայկական հին մատենագրութեան մեր ունեցած ծանօթութիւնքը տակաւին իրենց սկզբնական վիճակին մէջն են։ Պատմական հետազօտութիւնը չի կրնար վախճանին հասնիլ, եթէ անկէ յառաջ կանխած չըլլայ վկայութեանց քննադատութիւնը։ Բայց արդ հայ բնագիրներուն ժամանակին, աղբերաց եւ հեղինակութեան մասին բազ-

Digitized by Google

մատեսակ խնդիրները միայն Գուտշմիտէն վեր սկսած են գիտնականօրէն յուզուիլ. եւ անտարակոյս տակաւին շատ հեռու է այն օրն երբ բաւական պարզաբանուած ըլլան։ Առ այժմ, հին Հայաստանի վիճակին վրայ՝ յիշեալ բնագիրներուն համեմատ եղած ուսումնասիրութիւնք, ի մասնաւորի հետազօտութիւնքն ի մասին քրիստոնէութեան մուծուելուն այս երկիրը, եւ այն կրօնին որուն տեղը բռնեց, յաճախ շատ խնդրական եզրակացութեանց կը տանին։

Յաջորդ էջերուն մէջ իմ նպատակս չէ հայկական հեթանոսական կրօնին ծանօթութիւնը զարգացընել։ Կը շատանամ յիշելով դից անունները, առանց զբաղելու անոնց էական բնութեամբն. առանց խուզարկելու անոնց պարսիկ, հայ կամ ասորի ծագումը. առանց ճըշգրտելու՝ զանոնք յունական Պանթէոնի դից հետ նոյնացընելու առաջարկութեանց արժէքն։ Արդեամբք ալ պարզապէս գրական կարգի խնդիր մըն է զոր յաջորդովս կը փորձեմ պարզաբանել։ Մովսիսի Խորենացւոյ քանի մը տեղերը հետազօտելով՝ կ՚ուզեմ ցուցընել որ այն տեղերը չեն կրնար որեւէ արժէք մ՚ունենալ պատմաբանի մը համար, եւ թէ անոնցմէ յաճախ հանուած հետեւութիւնքը գոնէ վաղաժաման են։

# Ա.

Արտաշէս Ա., եթէ պէտք է հաւատալ Մ. Խորենացւոյ, Վաղարշակայ թոռն ու երկրորդ յաջորդն էր որ հիմնեց Հայոց Արշակունեաց հարստութիւնը։ Պատերազմասէր միապետ մըն է, որ կ'աշխարհակալէ Փոքր-Ասիան, կը գրաւէ Ցունաստանն, եւ "ընու զՈվկիանոս բազմութեամբ նաւաց։" Կը մեռնի զինուորական ապստամբութեան մ'ատեն, երբ իւր անհամար զինուորները զէրար կը կոտորէին. (Մ. Խոր., Բ, ժաժգ։) Արտաշէս իւր գահը թողուց Տիգրանայ իւր որդւոյն, Միհրդատայ փեսային եւ դաշնակցին, Լուկուլլոսի եւ Պոմպէի հակառակորդին, որ իւր աշխարհակալութիւնքն տարածեց Միջագետաց եւ Ասորւոց աշխարհին կողմը։

Իւր արշաւանաց ժամանակ՝ Փոքր-Ասիա եւ Ցունաստան որոշ թուով դից արձաններ գտաւ Արտաշէս, զորոնք Հայաստան խաւրեց՝ ազգային մեհեաններուն մէջ կանգնելու, իբրեւ նշանակներ իւր յաղթութեանց։ Տիգրան իւր հօրը կամաց գործադրութիւնն աւարտեց, եւ մեհեանները ճոխացուց Միջագետք գտնուած արձանով մը։

Ահա Մովսիսի Խորենացւոյ այն տեղերն որ այս դէպքերուն կը վերաբերին։

## 1.

Եւ գտեալ յԱսիայ պղնձաձոյլ ոսկէզօծ պատկերս զԱրտեմիդեայ եւ զՀերակլեայ եւ զԱպողոնի, տայ (Արտաշէս) բերել յաշխարհս մեր, զի կանգնեսցեն յԱրմաւիր։ Զոր առեալ քրմապետացն, որ էին յազգէ Վահունեաց, զԱպողոնին եւ զԱրտեմիդեայն կանգնեցին յԱրմաւիր․ իսկ զՀերակլեայն զառնապատկերն՝ զոր արարեալ էր ի Սկիւղեայ եւ ի Դիպինոսէ Կրետացւոյ, զՎահագն իւրեանց վարկանելով նախնի, կանգնեցին ի Տարօն յիւրեանց սեփհական գիւղն յԱշտիշատ, յետ մահուանն Արտաշիսի։ (Բ, ժբ։)

## 2.

Բայց եւ յԵլլադայ առեալ պատկերս զԴիոսի, զԱրտեմիդեայ, զԱթենայ, զՀեփեստու, զԱփրոդիտեայ, տայ (Արտաշէս) բերել ի Հայս։ Որ ոչ ժամանեալ միջամուտ լինել յաշխարհս, լուեն զբօթ մահուան Արտաշիսի, եւ փախուցեալ ընկենուն զպատկերսն յամրոցն յԱնի[1]. եւ քուրմք զնոցին զհետ լինելով, դադարեն առ նոսա։ (Բ, ժբ։)

## 3.

Առաջին գործ զմեհեանսն շինել կամեցաւ (Տիգրան։) Իսկ քրմացն որ եկեալ էին ի Յունաց, զմտաւ ածեալ՝ զի մի ի խորագոյն Հայս վարիցին, պատճառեցան ըղձութիւնս, իբր թէ դիքն անդէն կամին զբնակիլն։ Որում հաւանեալ Տիգրան, կանգնեաց զոլոմպիական պատկերն Դիոսի յամուրն յԱնի, եւ զԱթենաս ի Թիլ. եւ զԱրտեմիդայ զմիւս պատկերն յԵրիզայ[2]. եւ

---

1 Պէտք չէ շփոթել ամրոցն Անի (որ կը կոչուի նաեւ Կամախ, նոր քարտէսներու վրայ՝ Կեմախ), Եփրատայ ձախ ափը՝ Բարձր-Հայոց մէջ, Անի քաղաքին հետ՝ Ախուրեան գետոյ վրայ Արարատ նահանգին մէջ՝ որ Բագրատունեաց արքայութեան մայրաքաղաքն եղաւ եւ որուն աւերակները հանրածանօթ են։ Հմմտ. St. Martin, Mémoires sur l'Arménie, I, 72 եւ 111 ff.

2 Tomaséo, Langlois եւ ուրիշներ կը գրեն Eriza. Բայց “Երիզայ” սեռական-տրական ձեւն է “Երէզ” անուան։ Տես

զԵփեստոսն ի Բագայառինջ։ Բայց զԱփրոդիտայ զպատկերն իբրեւ Երակղեայ տարփածուի՝ առ նորին պատկերին Երակղեայ հրամայեաց կանգնել յուշտից տեղւոն (= Աշտիշատ։) Եւ ցասուցեալ ընդ Վահունիան, եթէ ընդէ՞ր յիւրեանց սեպհականին իշխեցին կանգնեցին զպատկերն Երակլի առաքեալ ի նորին հօրէ, ընկենու զնոսա ի քրմութենէն, եւ զգեւղն յարքունիս առնու, յորում պատկերքն կանգնեցան։ (Բ, ժդ։)

4.

Ինքն (Տիգրան) իջանէ ի Միջագետս, եւ գտեալ անդ զԲարշամինայ զպատկերն՝ զոր ի փղոսկրոյ եւ ի բիւրեղէ կազմեալ էր արծաթով, հրամայէ տանել կանգնել յաւանին Թորդան։

Այս տեղերէն՝ զորոնք յառաջ բերինք ինքնին կը հետեւի որ՝ Մովսիսի Խորենացւոյ ժամանակագրութեան համաձայն մերձաւորապէս մեր քրիստոնէական թուականութեան առաջին դարուն սկիզբները՝ Հայաստանի հեթանոսական մեհեանները փոխադրուեցան ինն դիցարձանք օտար ծագմամբ, երկու աշխարհակալ միապետաց՝ Արտաշիսի եւ Տիգրանայ՝ հրամանաւ։ Այս արձաններէն երեքը Փոքր-Ասիայէն էին, հինգը՝ Եղլադայէն, մին՝ Միջագետքէն։ Հայկական տաճարներուն մէջ զետեղուեցան հետեւեալ կերպով.

Առջի փոխադրումները

1. Արտեմիս (Ա), որուն արձանը կանգնուեցաւ . . . . . . . . Արմաւիր.
2. Հերակղ . . . . . . . . . Աշտիշատ.
3. Ապողոն . . . . . . . . . Արմաւիր:

---

Ագաթանգեղեայ քով ձեւի կրկին օրինակները (տպ. 1862). էջ 49 եւ 590։

Digitized by Google

### Ելլադա աստուածները՝

4. Դիոս . . . . . . . . . . Անի.
5. Արտեմիս (Բ) . . . . . . . Երէզ.
6. Աթենաս. . . . . . . . . . Թիլ.
7. Հեփեստոս . . . . . . . . Բագայառինջ.
8. Ափրոդիտէ. . . . . . . . Աշտիշատ:

### Միջագետքի աստուածը՝

9. Բարշամէն . . . . . . . . Թորդան:

Արմաւիր քաղաքն՝ որուն համար որոշած էր Արտաշէս Ասիոյ մէջ գրաւած երեք արձաններն, եւ որ սակայն միայն Արտեմիդեայ եւ Ապողոնի արձանները ստացաւ, այն ժամանակ տակաւին մայրաքաղաք էր Հայաստանի։ Արտաշիսի հաւը՝ Վաղարշակ՝ հոն կանգնած էր արդէն իւր նախնեաց անդրիներուն հետ նաեւ Արեգական եւ Լուսնի արձանները. (Բ, ը։) Երբ Երուանդ՝ Սանատրկոյ յաջորդը՝ թողուց Արմաւիրն եւ իւր արքունեօք հաստատուեցաւ Երուանդաշատ քաղաքը՝ զոր շինած էր Երասխայ վրայ եւ Ախուրեան գետէն ոչ հեռու, իւր նոր մայրաքաղաքը փոխադրել տուաւ այն ամէնն որ կար հնոյն մէջ, ի բաց առեալ սակայն դից անդրիները։ Կասկածոտ միապետն իւր բնակութեան մօտ երկրպագուաց մեծաթիւ խուռնընթաց բազմութենէն վախնալով՝ բագիններն ու արձանները հաւաքեց միացուց քաղաքի մը մէջ՝ որ յատկապէս պաշտաման նուիրուած էր, զոր շինեց քիչ մը հեռուն եւ անուանեց Բագարան. (Բ, լթ, խ։) Սակայն իւր յաջորդը՝ Արտաշէս Բ.՝ ինքն ալ նմանապէս իրեն մայրաքաղաք մը շինեց, որուն իւր

Digitized by Google

անունը տուաւ՝ Արտաշատ. Հոն ժողվեց այն ամենայն՝ զոր իւր նախորդը հանած էր Արմաւրէն՝ անոնցմով Երուանդաշատն ու Բագարանը զարդարելու համար, փոխելով նաեւ "զպատկերն Արտեմիդայ եւ զամենայն կուռս հայրենիս„ (Սանատրկոյ*:) Արտաշատ փոխադրուեցաւ նաեւ Ապողոնի արձանը, որ սակայն կանգնուեցաւ "արտաքոյ քաղաքին... հուպ ի ճանապարհն.„ (Բ, խթ:) Սակայն ասով ալ Արմաւրի հին կուռքերուն բախտի փոփոխմունքն վախճան չառին: Երբ Արտաշիր՝ սասանեան առաջին թագաւորն՝ սպաննել տուաւ Հայոց Խոսրով արքայն եւ աշխարհակալեց անոր թագաւորութիւնը, կործանեց Արտաշատի մէջ եղած Արեգական եւ Լուսնի արձանները, ինչպէս նաեւ Վաղարշակայ նախնեաց անդրինները, (Բ, հէ:) Ուստի մայրաքաղաքին մէջ կը մնային միայն Արտեմեայ եւ Ապողոնի արձանները:

Միւս կուռքերուն զետեղման մասին որեւէ փոփոխութիւն մը չի նշանակուիր: Ըստ այսմ պէտք է միայն Արմաւրի անուան տեղ փոխել դնել Արտաշատի անունը, որպէս զի ունենանք ութ մեհենաց ցանկը, որոնց երկուքն՝ Արտաշատ (մեհեան Արտեմեայ եւ Ապողոնի,) մին՝ Աշտիշատ երկու յարակից արձաններով (Հերակղէս եւ իւր տարփաւորն Ափրոդիտէ,) եւ մէյ մէկ

* Հայագէտը կը հասկընայ եւ կը թարգմանէ՝ et toutes les idoles de son père [Sanatrouk], այսինքն՝ "եւ իւր հօր (Սանատրկոյ) բոլոր կուռքերը:„

Digitized by Google

այս մեհենատեղիները՝ Անի, Երէզ, Թիլ, Բագայառինջ եւ Թորդան։

Այս մեհենատեղիները շատ անկանոն կերպով բաշխուած են Հայ հողին ամբողջութեան վրայ[1]։ Արտաշատ կենդրոնական Հայաստանի մէջն է. (Երասխի հովիտը։) Աշտիշատ՝ Հարաւային. (Տարօնոյ գաւառ.) միւս հինգը խմբուած են Բարձր Հայոց անձուկ աշխարհաբաժնի մը մէջ՝ կազմուած երեք սահմանակից գաւառներէն Դարանաղեաց, Եկեղեաց („Ակիլիսենէ„) եւ Դերջան („Դերքսենէ„։) Իրաց այսպիսի տարօրինակ վիճակ մը միայն շատ թերակատար կերպով կրնայ մեկնել յոյն քրմաց դիմադարձ հակառակութիւնն՝ իրենց կռոց Հայաստանի այլ եւ այլ նահանգները ցրուելուն դէմ։

---

1 Տես այս ուսումնասիրութեանս կից քարտէսը։

# Բ.

Քրիստոնէական Թուականութեան Գ. դարուն վերջերը կամ Դ. դարուն սկիզբն — ժամանակաթիւն անորոշ է, — յունական կուոց Հայաստանի տաճարներուն մէջ բազմելէն մերձաւորապէս չորսհարիւր տարի ետքը, Տրդատ արքայն կը նստէր Վաղարշապատ՝ արդի Երեւան քաղաքէն ոչ հեռու։ Բոլորովին արտակարգի դէպքերու հետեւութեամբն՝ որոնց զարմանալի պատմութիւնը կ'ընէ մեզի Ագաթանգեղոս, եւ Ս. Գրիգորի Լուսաւորչի քարոզութեան արդեամբքն՝ Տրդատ կ'ընդգրկէ քրիստոնէական հաւատքը։ Նոյն իսկ մկրտուելէն յառաջ՝ կը հրամայէ "ինքնիշխան հրամանաւ" որ "հայրենական հնամեաց նախնւոյն եւ զիւր կարծեցեալ աստուածսն՝ չաստուածս անուանեալս" ընջուին Հայոց աշխարհի հողէն, եւ նաեւ անոնց յիշատակն անհետ կորսուի։

Այն ատեն կը սկսի ճշմարիտ պատերազմ մը, որուն միայն ամենակարեւոր կէտերը կը քաղենք հոս։ Տրդատայ կ'ընկերանան իւր ազնուականքն եւ իւր զինուորները. անոնց պէտք կ'ունենայ կռուելու համար դիւաց դէմ որոնք յաճախ զէն ի ձեռին կը պաշտպանեն հեթանոս տաճարներուն մուտքը։ Իրեն հետ կ'առնու զՍ. Գրիգոր, եւ Թողլով Վաղարշապատու իւր գա-

հանիստը, ամէնէն յառաջ կը դիմէ դէպ ի Արտաշատ, որպէս զի կործանէ Անահտայ դիցուհւոյն բագինքը. բայց՝ քաղաքը մտնելէն յառաջ՝ "ի ճանապարհի„ կը գտնէ Տիր (կամ Տիւր) դից մեհեանը, զոր նախ կը քանդէ, յետոյ քանդելով Անահտայ մեհեանն ալ. (Ագաթ. էջ 584 եւն:)

Այնուհետեւ Ս. Գրիգոր կը սկսի շրջան մ'ընել աւետարանելու Հայոց աշխարհի քաղաքները, աւաններն ու գիւղերը, նշանակելով ապագայ եկեղեցիներուն տեղերը, տնկելով խաչեր, եւ սորվեցընելով քրիստոնէական վարդապետութիւնը. (անդ՝ էջ 587 եւն:)

Կը սկսի դարձեալ կուռքերու դէմ պատերազմը: Տրդատ եւ Ս. Գրիգոր կը դիմեն Հայոց աշխարհի արեւմտակողմը, ուր նախ կը գտնեն, Դարանաղեաց գաւառին մէջ Թորդան գիւղը, Բարշամինա դից մեհեանը: Մեհեանը կը կործանուի եւ դից արձանը կը փշրուի: Ս. Գրիգոր կը մնայ նոյն գաւառը՝ բնակիչները քրիստոնէութեան դարձընելու համար, եւ կը յաջողի հալածել դեւերը. (էջ. 588 եւն:)

Թագաւորն ու Սուրբն անկէ կու գան Անի ամրոցն, Հայոց արքայից գերեզմանատեղին, որպէս զի կործանեն Արամազդայ՝ հօր ամենայն դից՝ բագինքն. յետոյ մերձակայ Եկեղեաց գաւառն, ուր Երէզ աւանին մէջ կը կործանեն Անահտայ տաճարը. անցնելով Գայլ (Lycus) գետը՝ Թիլ աւանին մէջ կը տապալեն Նանէի՝ Արամազդայ դստեր՝ տաճարը. վերջապէս Ս. Գրիգոր աւե-

Digitized by Google

տարանելը շարունակելով եւ Տրդատ պատմելով իրեն պատահած սքանչելիքները՝ կը հասնին Դերջան գաւառը, եւ կը քանդեն՝ Բագայառինջ աւանին մէջ՝ Մէհր դից, Արամազդայ որդւոյն՝ տաճարը. (էջ 590 եւն։)

Բարձր-Հայոց մեհեաններուն կործանմանէն ետքը՝ քանդման այս գործը քիչ մը ժամանակ դադար կ'առնու։ Թագաւորն եւ արքունիքը դարձած են Քրիստոսի հաւատոց, բայց տակաւին չէին “լուսաւորեալ մկրտութեամբ․„ որովհետեւ Ս. Գրիգոր՝ տակաւին քահանայ չըլլալով՝ չէր կրնար մկրտել։ Մեծ ժողովք մը կ'ըլլայ Վաղարշապատ, ուր կ'որոշուի խաւրել զինքն ի Կեսարիա Կապադովկիոյ, որպէս զի տեղւոյն եպիսկոպոսէն ձեռնադրուի։ Ս. Գրիգոր ճամբայ կ'ելլէ “ի կառսն արքունականս„ ուղեկցութեամբ բազմաթիւ Նախարարաց եւ բիւր մի զօրաց։ Կեսարիա կը ձեռնադրեն զինքն Ղեւոնդիոս եպիսկոպոս եւ նոյն կողման միւս եպիսկոպոսները. եւ այսպէս կ'առնու “Նա իշխանութիւն յերկինս եւ յերկրի, առնուլ զփականս արքայութեանն երկնից։„ Ըստ ծիսից եղած քահանայ (եւ եպիսկոպոս) եւ գլուխ Հայոց եկեղեցւոյ, կը դառնայ իւր երկիրը, մեծապատիւ մեծարուած ամէն անցած տեղերէն, եւ բերելով իրեն հետ սրբոց թանկագին նշխարքն զոր իրեն շնորհած էր Ս. Ղեւոնդիոս. (էջ 594 եւն։)

Հասնելով Հայոց երկրին սահմանագլուխը՝ կ'իմանայ Ս. Գրիգոր որ կանգուն կայ տակաւին Տարօնոյ աշխարհը մեհեան մ'որուն մինչեւ այն

տան խնայուած էր։ Վահէվահեան[1] մեհեանն էր, նուիրուած Վահագն դից, հռչակաւոր մեհենաց ութերորդն[2], «յաշտից տեղիք թագաւորացն Հայոց մեծաց,» լի ամենամեծ գանձերով, եւ կը գտնուէր Աշտիշատի աւանը։ Ագաթանգեղոս միւս մեհեաններէն շատ աւելի մանրամասնութիւններ կը հաղորդէ այս հռչակաւոր մեհենին վրայ. սակայն իւր նկարագրութիւնը շատ պայծառ չէ։ Կը տեսնենք՝ որ Վահէվահեան մեհեանն երեք բագինք կամ տաճար ունէր, որոնք նուիրուած էին՝ առաջինը Վահագն դից, երկրորդը՝ Ոսկեմօր, երրորդը՝ Աստղիկ դիցուհւոյն, Վահագնի տարփաւորին, զոր Յոյնք Աֆրոդիտէ կ'անուանեն[3]։ Երկրորդին մասին մեկնիչները կը

1 Վահէվահեան բառը տակաւին բաւականաչափ մեկնուած չէ։ Կ'երեւայ թէ կ'ածանցի Վահէվահէ ձեւէ մը՝ որ համազօր ըլլայ Վահագնի։ Հմմտ. H. Gelzer, Zur arm. Götterlehre, p. 104, եւ Hübschmann, Arm. Grammatik, I, 76, 508։

2 «Ութերորդ պաշտաւն» են։ Թարգմանիչներուն մեծ մասը միտ չեն դրած որ խօսքն է պարզապէս «ութերորդ» (եւ վերջին) կռապաշտական պաշտաման մասին. զոր Ս. Գրիգոր կործանեց։ Tomaséo կը թարգմանէ՝ celebrato col nome d'ottavo culto del così detto Vaacno (հռչակեալ անուամբ ութերորդ պաշտաման այսպէս անուանուած Վահագնի.) — Langlois կը փոխադրէ՝ célèbre par le nom de la huitième statue du dieu appelé Vahakn (հռչակաւոր անուամբ ութերորդ արձանին դից Վահագն անուն.) Հիւպշման շատ լաւ փոխադրած է՝ das achte berühmte Heiligthum (ութերորդ հռչակաւոր սրբարանն կամ մեհեանը). տես Arm. Gramm. I, 76։

3 Հայերէն բնագիրն, եթէ բառացի թարգմանուի, կ'ըսէ թէ երրորդ տաճարը կ'անուանէր ննջարան Վահագնի («Սենեակ Վահագնի»)։ Նոյն «սենեակ» բառը կը նշանակէ նոյնպէս փորփառոց։

Digitized by Google

համաձայնին յայնմ որ զՈսկեմայր դիք նոյն կը համարին Անահտայ դիցուհւոյն հետ՝ զոր արդէն գտանք յԱրտաշատ եւ յԵրէզ, բայց հոս բնագիրը չի յիշեր յանուանէ։

Վահէվահեան մեհենին կործանման ժամանակ շատ աւելի արտակարգի սքանչելիքներ պատահեցան։ Մեհեանը տապալելու համար խաւրուած զինուորները՝ դեւերուն մոլորցընելովն՝ չէին կրնար մուտքը գտնել։ Իրենց գործիքներուն երկաթը չէր գծեր որմոց վրայ։ Ս. Գրիգոր այս բանս տեսնելով կ՚ելլէ բլրոյն վրայ՝ որ մեհենին հանդիպակաց էր, օգնութեան կանչեց Ամենազօրն, եւ իւր ձեռքը բռնած խաչէն ելեց "հողմ ուժգին„ որ գնաց տապալեց հարթեց շինուածքն, այնպէս որ եւ ո՛չ "նշմար„ մը մնաց տեղւոյն. (էջ 606 եւն։)

Այն ժամանակ միայն Ս. Գրիգոր շինեց առաջին եկեղեցին եւ սկսաւ Հայերը մկրտել։ Տրդատ արքայ՝ լսելով իւր Վաղարշապատ գահանիստը սրբոյն եպիսկոպոսի դարձը, աճապարեց եկաւ առջեւն ելլելու, եւ մկրտուեցաւ Եփրատայ ափանց վրայ իւր արքունեօք եւ բոլոր բանակովն։

Մեր նպատակէն դուրս է հոս պատմական ճշմարտութեան տեսակէտով ճշգրտել այս զարմանալի պատմութիւնն որուն գլխաւոր կէտերը քաղեցինք դրինք։ Կ՚ընդունինք դէպքերն այնպէս ինչպէս որ մեզի կը պատմուին, եւ կը հաստատենք որ քանդման ենթարկուեցան ութ մեհեաններ, որոնց երկուքն էին յԱրտաշատ, եւ

Digitized by Google

# Գ․

Գրեթէ աւելորդ է մտադիր ըլլալ որ այս տեղերուն անունները նոյն են անոնց հետ, զոր տեսանք երբ Մովսէսի Խորենացւոյ նոյն տեղերը վերը յառաջ բերինք։ Միայն դից անունները տարբեր են. հոն՝ ուր Ագաթանգեղոս դից հայ անուններ կը յիշէ, Մ. Խորենացի յունական անուններ կու տայ [1]։ Այս տարբերութիւնը որ առաջին անգամ այնպէս զգալի է, բոլորովին կ'անհետանայ՝ եթէ Ագաթանգեղեայ հայ բնագրին տեղ առնունք

---

1 Մովսէսի Խորենացւոյ Պատմութեան միւս մասին մէջ շատ ցանցառ կը հանդիպինք Ագաթանգեղոսի գործածած դից անուններուն։ Կրնայ նաեւ ըսուիլ որ հեղինակը կ'երեւայ թէ տեսակ մ'ընդդիմութիւն կը զգայ զանոնք՝ այս ձեւին տակ՝ հայկական դիք համարելու։ Արամազդ, որ ամենէն աւելի յիշուածն է (Ա, լա. Բ, ծզ. ձզ, Գ, ժե.) միայն մէկ անգամ է իբր դիք Հայոց աշխարհի (Բ, ծզ.) այլուր է դիք Վրաց (Բ, ձզ)։ — Վահագն (Ա. լա. Բ, ը. ժը)՝ թէպէտ եւ Հայոց աշխարհի արքայի մը որդին, անդրի մ'ունի Վրաց քով՝ զոր կը պատուեն զոհերով. (Ա, լա։) — Բարշամին (Բ, ժդ. իսկ Ա, ժդ "Բարշամ" անուան ներքեւ) կը պաշտուի Ասորիներէն։ — Միհր միայն անգամ մը կ'երեւայ (Գ, ժէ) իբրեւ Պարսից դիք։ — Աստղիկ՝ նոյնպէս մէկ անգամ (Ա. ղ) իբրեւ քոյր Զրուանայ, Տիտանայ եւ Յապետոսթեայ, որոնք՝ ըստ Մ. Խորենացւոյ՝ են Սեմ, Քամ եւ Յաբեթ. (տես Carrière, Moïse de Khoren et les Généalogies patriarcales, p. 42.) ուստի Աստղիկ է դուստր Նոյի (՛)։ — Անահիտ՝ որ հնութեան միաձայն [illegible]թեան համեմատ Հայաստանի մեծ դիցուհին է, եւ [illegible] մը յիշուած է, ինչպէս եւ ոչ Տիր եւ Նանէ։

մէյ մէկ հատ այս աւանները՝ Թորդան, Անի, Երէզ, Թիլ, Բագայառինջ եւ Աշտիշատ, վերջինս երեք կուռքերով՝ որոնց երկուքը յանուանէ յիշուած են։

# Գ.

Գրեթէ աւելորդ է մտադիր ընել որ այս տեղերուն անունները նոյն են անոնց հետ, զոր տեսանք երբ Մովսէսի Խորենացւոյ նոյն տեղերը վերը յառաջ բերինք։ Միայն դից անունները տարբեր են. հոն՝ ուր Ագաթանգեղոս դից հայ անուններ կը յիշէ, Մ. Խորենացի յունական անուններ կու տայ [1]։ Այս տարբերութիւնը որ առաջին անգամ այնպէս զգալի է, բոլորովին կ'անհետանայ՝ եթէ Ագաթանգեղեայ հայ բնագրին տեղ առնունք

---

1 Մովսէսի Խորենացւոյ Պատմութեան միւս մասին մէջ շատ ցանցառ կը հանդիպինք Ագաթանգեղոսի գործածած դից անուններուն։ Կրնայ նաեւ ըսուիլ որ հեղինակը կ'երեւայ թէ տեսակ մ'ընդդիմութիւն կը զգայ զանոնք՝ այս ձեւին տակ՝ հայկական դիք համարելու։ Արամազդ, որ ամէնէն աւելի յիշուածն է (Ա, լա. Բ, ծգ. ձզ, Գ, ժե.) միայն մէկ անգամ է իբր դիք Հայոց աշխարհի (Բ, ծգ.) այլուր է դիք Վրաց (Բ, ձզ)։ — Վահագն (Ա, լա. Բ, ը. ժբ)՝ թէպէտ եւ Հայոց աշխարհի արքայի մը որդին, անդրի մ'ունի Վրաց քով՝ զոր կը պատուեն զոհերով. (Ա, լա։) — Բարշամին (Բ, ժդ. իսկ Ա, ժդ "Բարշամ" անուան ներքեւ) կը պաշտուի Ասորիներէն։ — Միհր միայն անգամ մը կ'երեւայ (Գ, ժէ) իբրեւ Պարսից դիք։ — Աստղիկ՝ նոյնպէս մէկ անգամ (Ա, ղ) իբրեւ քոյր Զրուանայ, Տիտանայ եւ Յապետոսթէի, որոնք՝ ըստ Մ. Խորենացւոյ՝ են Սեմ, Քամ եւ Յաբեթ. (տես Carrière, Moïse de Khoren et les Généalogies patriarcales, p. 42.) ուստի Աստղիկ է դուստր Նոյի (՛)։ — Անահիտ՝ որ հնութեան միաձայն վկայութեան համեմատ Հայաստանի մեծ դիցուհին է, եւ ոչ անգամ մը յիշուած է, ինչպէս եւ ոչ Տիր եւ Նանէ։

Digitized by Google

| | ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍ | | | ՄՈՎՍ. ԽՈՐԵՆԱՑԻ | |
|---|---|---|---|---|---|
| | ՄԵՀԵԱՆՔ | ԴԻՔ | | ՄԵՀԵԱՆՔ | ԴԻՔ |
| | | ՀԱՅ ԲՆԱԳԻՐ | ՅՈՅՆ ԲՆԱԳԻՐ | | |
| 1 | Արտաշատ | Անահիտ | Արտեմիս | Արմաւիր[1] | Արտեմիս |
| | | | | Աշտիշատ | Հերակղէս |
| 2 | Արտաշատ | Տիր (Տիւր) | Ապողոն | Արմաւիր[1] | Ապողոն |
| 3 | Թորդան | Բարշիմնիա | Բարսամէնէ | | |
| 4 | Անի | Արամազդ | Դիոս[2] | Անի | Դիոս |
| 5 | Երէզ | Անահիտ | Արտեմիս | Երէզ | Արտեմիս |
| 6 | Թիլ | Նանէ | Աթենաս | Թիլ | Աթենաս |
| 7 | Բագայառինջ | Միհր | Հեփեստոս | Բագայառինջ | Հեփեստոս |
| | | Վահագն | Հերակղէս | | [Հերակղէս] |
| 8 | Աշտիշատ | Ա. | Ա. | Աշտիշատ | . . . . . |
| | | Աստղիկ | Ափրոդիտէ | | Ափրոդիտէ |
| | | | | Թորդան | Բարշամէն |

յոյն[3] բնագիրը, որ դից հայ անունները ճիշդ միեւնոյն յունական անուններով կը թարգմանէ՝ զորոնք կը գտնենք Մ. Խորենացւոյքով։ Հոս դրուած տախտակը պայծառ կը ցուցընէ թէ այս երեք բնագիրներուն քննութեամբ ինչ նմանութիւններ եւ ինչ աննմանութիւններ երեւան կ'ելլեն։

Անուններուն ձեւին մէջ մի միակ տարբերութիւն մը կայ զոր նշանակելու ենք[4]։ Հոն՝

---

1 Վերը տեսանք թէ ինչպէս կուռքերն Արմաւրէն փոխադրուեցան յԱրտաշատ։

2 Հոս կը պահենք Διός (= Դիոս) սեռականը. վասն զի դից բոլոր միւս անուններն ալ սեռականի ձեւով կը գտնուին Ագաթանգեղեայ յոյն բնագրին մէջ, եւ դարձեալ նոյնպէս Մովսիսի Խորենացւոյ Հայերէնին մէջ։ “Դիոս„ (Διός) դից վերաբերեալ կտորը (Հմտկ. Lagarde, p. 67) դժուարութիւն մ'ունի։ Հայոյն այս խօսքը (Ագաթ. 590) “զբագինն եւս դիցն Արամազդայ՝ հօրն անուանեալ դիցն ամենայնի,„ յոյնը կը թարգմանէ այսպէս՝ τὸν βωμὸν Κρόνου, τοῦ πατρὸς Διὸς παντοδαίμονος (զբագինս Կրոնոսի հօրն Դիոսի ամենադիցի։„) Այս բանս կերպապէս կը հակասէ թարգմանչին սովորական գործածութեանն, որուն համար Արամազդ միշտ Ζεύς է. (տես Lagardeի քով անուանց ցանկը ի բառն Δία։) Անտարակոյս վերոյիշեալն գրչի մը սրբագրութիւնն է, որ չընդունելով թէ Ζεύς ըլլայ “հայր դիցն ամենայնի„, աւելցուցած է Κρόνος (Կրոնոս, Saturnus) անունը։ Մովսիսի Խորենացւոյ համար “Դիոս„ ուղղական է՝ “Դիոսի„ սեռականաւ։ Սակայն “Դիոս„ նաեւ առհասարակ Հայերէնի մէջ իբրեւ ուղղական կը գործածուի. բազմաթիւ օրինակներ տես Հ. Տաշեանի ընտիր փոքրիկ գրքին մէջ. (“Ագաթանգեղոս առ Գէորգայ ասորի եպիսկոպոսին„ եւն, Վիեննա 1891, էջ 53 ծան.։)

3 Տես Agathangelus und die Akten Gregors von Armenien, neu herausgegeben von Paul de Lagarde. Göttingen 1887.

4 Յատկապէս խօսելով “Թագաւորին„ եւ “Թա-

ուր Մովսիսի Խորենացւոյ բնագիրն ունի "Բար-շամինայ„, որ կանոնաւոր սեռական մըն է "Բար-շամէն„ ձեւի ուղղականի մը, Ագաթանգեղոսի բնագիրը մեր առջեւը կը դնէ բաւական տար-օրինակ ձեւ մը՝ "Բարշէմինէա„: Կրնանք իբրեւ ստոյգ նկատել որ այս վերջին ընթերցուածը գրչի մը սխալագրութիւնն է փոխանակ "Բա՛ր-շամինա„ գրելու, ինչպէս լաւ կը ցուցընէ նոյն տեղւոյն համապատասխանող յոյն բնագիրն՝ որ ունի Βαρσαμήνης: Ցատուկ անուան մ'այսպիսի մէկ սխալագրութիւնն ամենեւին չի զարմա-ցըներ զանոնք որ հայերէն ձեռագիրներով զբա-ղած են [1]:

Աչքի կը զարնէ նոյնպէս այս միեւնոյն անուան գրուած տեղւոյ տարբերութիւնն ալ յիշեալ երկու ցուցակներուն մէջ: Ագաթան-գեղոսի քով Թորդանի մեհեանն անմիջապէս կը հետեւի կարգաւ Արտաշատի կրկին մեհեան-ներուն. իսկ Մովսիսի Խորենացւոյ քով շարքին վերջին տեղը կը բռնէ: Այս մասնաւոր հան-գամանաց մեկնութիւն մը պիտի տանք յետոյ: Առ այժմ թողունք զ"Բարշամէն„ մէկդի, եւ տեսնենք թէ տախտակին միւս անուններն ինչ կարգաւ իրարու կը յաջորդեն:

Նոյն իսկ ինքն Մովսէս Խորենացի նախա-հոգութիւն ունեցած ըլլալով մեզի պատմելու

գայաւիջ„ կրկին ուղղագրութիւնքն տարբերութիւն մը չեն ներկայացըներ:

1 Վերջին վայրկենիս "Բարշամինա„ ալ կը գտնեմ Ագաթանգեղոսի Վենետկոյ 1835ին հրատարակութեան տարբեր ընթերցուածներուն մէջ:

թէ ինչպէս Նախնաբար Արմաւիր կանգնուած կուռքերն Արտաշատ փոխադրուեցան (տես վերը՝ Ա,) եւ դարձեալ թէ ինչպէս Հերակղի անդրին՝ որ Արմաւրի համար որոշուած էր կանգնուեցաւ յԱշտիշատ (տես՝ անդ), կրնանք հոս հաստատել որ թէ Ագաթանգեղեայ եւ թէ Մովսիսի Խորենացւոյ քով մեհեաններն ու կուռքերը դասաւորուած են միեւնոյն կարգաւ։

Այս կարգի նմանութիւն մը չի կրնար մեկնուիլ միայն պարզ զուգադիպութեամբ. անհրաժեշտ կ'ենթադրէ իրարմէ կախման աղերս մ'երկու բնագիրներուն մէջ։

Յաջորդ դիտողութիւնքն ալ կը նպաստեն այս եզրակացութեան։

ա. “Բարշամին„ անունը, որ սեմական ծագում ունի, բայց ապահովապէս աղաւաղած է (թերեւս ըլլայ Բեելշամին) բովանդակ հայ մատենագրութեան մէջ ուրիշ տեղ չի գտնուիր*։

---

* Իբրեւ Հայոց դից մեզ ալ անծանօթ է ուրիշ տեղ մը: Բայց իբր Ասորեստանեայց դիք կը գտնուի այլուր ալ՝ Խիկարայ հայ թարգմանութեան մէջ, քիչ մը տարբեր ձեւով, ուր (ed. Harris-Conybeare, p. 125) կ'ըսուի “Ո՛վ տեարք իմ եւ չաստուածք Բէլշիմ եւ Շիմիլ եւ Շամին„ եւն (միւս խմբագրութիւնք հոս չունին անուն), եւ երկրորդ տեղ մը (p. 152) “Սինաքարիմ արքայն նման է Բէլշիմի„ եւն: Միւս խմբագրութեանց այս վերջին տեղը կը ցուցընէ որ իմաստն է “Բէլ Երկնից„, ըստ այսմ՝ համեմատ Հայագիտիս կարծեաց: Տես Խիկարայ մեր ուսումնասիրութիւնքն՝ “Հանդէս Ամս.„ 1899, էջ 115—116 (առանձինն՝ “Մատենագր. Մանր Ուսումնասիրութիւնք„, Բ, 43—44, ընդ մամլով:)

Digitized by Google

Բ. Նոյնպէս է նաեւ բացատրութիւնս "յաշտից տեղի„ որ գործածուած է Աշտիշատ քաղաքը նշանակելու համար, որով նաեւ նոյն անուան ժողովրդական ստուգաբանութիւն մը տրուած է[1]: Միայն թէ Ագաթանգեղոսի բնագրին մէջ (էջ 606) Վահէվահեան մեհենին համար գործածուած ընդարձակագոյն բացատրութիւնն՝ "յաշտից տեղիք Թագաւորացն Հայոց մեծաց՝„ Մովսէսի Խորենացւոյ շատ համառօտեալ բնագրին մէջ վերածուած է միայն սա երկու բառերուս "(կանգնել) Յաշտից տեղւոյն„ (Բ, ԺԴ.) որոնք գործածուած են իբրեւ յատուկ անուն Աշտիշատայ անուան տեղ:

Գ. Երբ Տրդատ արքայն կ'իջնայ Վաղարշապատէն դէպ ի Արտաշատ, որպէս զի կործանէ Անահտայ-Արտեմիդեայ մեհեանը, քաղաքը մտնելէն յառաջ եւ "ի ճանապարհին՝„ կը հանդիպի Տիր-Ապողոն դից մեհենին. (Ագաթ. էջ 584:) Հոս խօսքն այն ճամբուն վրայ է, որուն հետեւեցաւ Թագաւորն, այսինքն այն բուն "ճանապարհն որ ելանէր (ի Վաղարշապատէ) յԱրտաշատ քաղաք„, զոր Ագաթանգեղոս արդէն յառաջ յիշած էր անգամ մը (էջ 151:) Միւս կողմանէ Մովսէս Խորենացի, երբ կը պատմէ մեզի թէ ինչպէս Արտաշէս Բ. արքայն Բագարանի կուռքերը փոխադրեց իւր նոր մայրաքաղաքն Արտաշատ (Բ, ԽԹ.) կը յաւելու՝ "բայց զԱպողոնի պատկերն արտաքոյ քաղաքին կանգնէ

---

1 Տես Hübschmann, Armenische Grammatik I, 212.

Հուպ է ծանապարհն»: Այս վերջին ակնարկութիւնը հոս բացարձակապէս զուրկ է ճշգրտութենէ. վասն զի մէկէն աւելի ճանապարհներ կը տանէին դէպ ի Արտաշատ:

Դ. Ըստ Մովսիսի Խորենացւոյ՝ «կանգնեաց զոլոմպիական պատկերն Դիոսի յամուրն յԱնի». (Բ, ժդ:) Այս տեղւոյ հայերէն բացատրութիւնը համառօտութիւն մը կ'երեւայ Ագաթանգեղոսի աւելի ընդարձակ բացատրութեան թէ «հասանէր յամուր տեղին՝ յանուանեալ յԱնի» (էջ 590): Անւոյ բերդը նշանակելու համար գործածուած սովորական բառն է ամրոց. (Մ. Խոր. Ժբ, լը:)

Գ.անք աննմանութեանց, որ յերեւան կուգան Ագաթանգեղեայ եւ Մովսիսի Խորենացւոյ բնագիրներուն ուսումնասիրութեամբն: Այս կարգէն արդէն նշանակեցինք երեք կէտ, զորոնք հիմայ պիտի ջանանք պարզաբանել, այսինքն՝

1. Բարշամէն դից տրուած տեղը՝ կարգին մէջ:

2. Հերակլի արձանին որոշուած տեղւոյ փոփոխութիւնը:

3. Դից յունական անունները՝ որոնք հայ անուններուն տեղը կը բռնեն:

Ե. Մովսէս Խորենացի Բարշամէն դից սեմական անուան յունական համապատասխանող անուն մը գտած չէ: Սակայն այս դիցական անձնաւորութեան ծագումը կը ճանչնայ, որովհետեւ անուան դոյզն փոփոխութեամբ մուծած է զայն Հայաստանի դիւցազնական պատմութեան մէջ:

Digitized by Google

*Բարշամ բռնաւոր մըն էր, Հսկայից ցեղէն, որ կը հարստահարէր երկրին հարաւակողմը: Արամ անոր դէմ արշաւեց, զարկաւ յաղթեց եւ փախըստական հալածեց՝ Կորդուաց մէջէն՝ դէպ ի Ասորեստան: Բարշամ մեռաւ ալ Արամայ զօրաց սրէն. բայց որովհետեւ հռչակաւոր եղած էր իւր քաջագործութեանց համար, աստուածացաւ եւ երկար ժամանակ պաշտուեցաւ Ասորիներէն. (Ա, ժդ:) Եւհեմերականութեան այս օրինակները ցանցառ չեն Մ. Խորենացւոյ քով*:*

*Ըստ հետեւորդի հարաւակողմը պէտք էր երթալ՝ փնտռել գտնելու անոր արձանը, եւ ո՛չ եւս Փոքր-Ասիա կամ Յունաստան՝ որո՛նք Արտաշիսի քաջագործութեանց ասպարէզն եղած էին: Ուստի Բարշամէնի արձանին գիւտը վերապահուեցաւ Տիգրանայ՝ Արտաշիսի որդւոյն, որ հնազանդեցուցած էր Միջագետքն ու Ասորիք: Ահա թէ ինչո՛ւ Ագաթանգեղոսի "սպիտակափառ դիք" (Բարշիմնիա՝) վերոյիշեալ շարքին մէջ վերջին տեղը փոխադրուած է (առ Մ. Խոր.), բայց այնպիսի անդրիով մ'որ միայն սպիտակ նիւթեր ունի՝ "ի Ճղակրայ եւ ի Բէ-րեղէ*

---

* *Այսինքն՝ Մ. Խորենացի ալ յաճախ կը ցուցընէ որ Եւհեմերոսի կարծիքն ունէր, թէ դիք նախնաբար մարդիկ էին: Եւհեմերականութիւն* (evhémérisme) *կ'ըսուի այս դրութիւնն կամ կարծիքն իւր հեղինակին անուամբն, որ է Եւհեմերոս* (Euhemeros *կամ* Euemeros) *յոյն փիլիսոփայն՝ Դ. դարուն Ն. Ք. զՔ՝ Կիւրենական դպրոցէն, ծաղկած Մակեդոնիոյ Կասանդր արքային արքունիքը: Իւր հռչակաւոր դրութիւնն այն էր թէ Յունաց պաշտած բոլոր դիք ուրիշ բան չեն բայց եթէ հռչակաւոր մարդիկ:*

Digitized by Google

կազմեալ էր Ուրհայեցւոց։ Ուրիշ տեղ մը մատնանիշ ըրած ենք[1] արդէն աղբիւրները գործածելու այս միանգամայն թէ խղճամիտ եւ թէ կամայական ոճը։

Բ. Ագաթանգեղոսի բնագրին մէջ չենք գտներ որեւէ յեցակէտ մը, որեւէ պատրուակ մ'այն պատմուածքին, որուն համեմատ Վահունիք[2] անհնազանդ գտնուեցան եւ Արտաշատի համար որոշուած Հերակղեայ արձանն Աշտիշատ փոխադրեցին։ Ագաթանգեղոս չի ճանչնար Վահունեաց տոհմը։ Իսկ Մովսէս Խորենացի կ'երեւայ թէ կ'անգիտանայ Վահէվահեան մեհեանը. բայց Վահնունի անունը կու տայ քրմական այն տոհմին՝ որուն անդամներն Աշտիշատի մեհենին կը սպասաւորէին։ Այս տոհմը կը սերէր Վահագնէն, զոր Մ. Խորենացի Հայոց աշխարհի Տիգրան Ա. արքային որդին ըրած է. (Ա, լա։) Նոյն տոհմին յանձնուեցաւ տաճարաց ծառայութիւնն, եւ քրմութեան պաշտօն տրուեցաւ Վաղարշակէն. (Բ, ը։) Սակայն կը տեսնենք որ կորսնցուց տոհմն իւր արտօնութիւններն եւ իւր ստացուածքները Տիգրանայ Մեծի իշխանութեան սկիզբը. (Բ, ժդ։) Ա՛լ այս վայրկենէս ետքը չի յիշեր Մ. Խորենացի այս տոհմը։ Թէեւ կը գտնենք նոյն անունը Նախարարաց մէկ ցանկին մէջ, որ մուծուած է Ս. Ներսէսի Վարուց Պատմութեան մէջ (տես Նոյնը՝ էջ 34,) սակայն բացի

1 Տես La légende d'Abgar, p. 385.

2 Կամ Վահնունիք։ Խորենացւոյ նորագոյն հրատարակութիւնքն ունին "Վահունիք"։

այս միակ եւ բաւական ուշ ժամանակի յիշատակութենէն՝ քրմական հին տոհմիս որեւէ հետքը չենք գտներ բովանդակ Հայ մատենագրութեան մէջ։ Վահնունիք ապահովապէս Մ. Խորենացւոյ երեւակայութեանն արդիւնքն են։

Մեզի կ'երեւայ որ Հերակղի արձանը՝ վերջնականապէս այն տեղը զոր կը նշանակէ Ագաթանգեղոսի Պատմութիւնը, կանգնուելէն յառաջ՝ յունական միւս արձաններուն առաջին առաքման հետ միացուած է՝ անոր համար որ Մ. Խորենացի առիթ ունենայ պատմելու Վահունեաց անհնազանդութիւնն ու անոնց կրօնական իշխանութեան վախճանը։ Նոյնպէս ալ արձանաց երրորդ առաքման՝ որ եղած է յԵլլադայէ, կցուած են յոյն քրմեր, որպէս զի իրենց բողոքներովն արգիլեն արձաններուն ցրուիլը Հայ հողին վրայ, եւ ասով մեկնուի մեհեաններուն այնպէս տարօրինակ բաշխուած ըլլալը, որոնց ութէն հինգը Բարձր-Հայոց մէկ փոքր անկիւնը կը խմբէ Ագաթանգեղոսի բնագիրը։

Հոս մեծ բաժին մը կու տանք Մ. Խորենացւոյ երեւակայութեանն. բայց ուրիշ քիչ տեղեր ասոնց պէս նկարագրական են իր գործելու եղանակը ցուցընելու համար։ Երբ կ'ըսէ թէ Հերակղեայ այն արձանը գործ էր Սկիւղեայ (Scyllis) եւ Դիպենոսի (Dipoenos) Կրետացւոյ, առջեւն ունի աղբիւր մը՝ հաւանօրէն աստրական, որ այսօր կամ վաղը պիտի գտնուի։ Պլինիոս կը յիշէ Հերկիւղեայ արձան մը Սկիւղեայ եւ Դիպենոսի արձաններուն մէջ (Plinius,

Digitized by Google

Hist. nat., XXXVI., 4) եւ Կեդրենոս ժամանակագիրը (I, 564, ed. Bonn) երբ յանուանէ կը յիշէ այս երկու երեւելի արձանագործները, կրնայ նոյն տեղեկութիւնն քաղած ըլլալ աղբիւրէ մ'որ մերձաւոր է Մ. Խորենացւոյ աղբեր: — Նախադասութեան վերջին անդամն՝ որ կը յաջորդէ Նախընթացին, Խորենացւոյ սեպհական սկզբնագիր բան մը չէ, այսինքն՝ "կանգնեցին ի Տարօն յիւրեանց սեպհական գիւղն յԱշտիշատ": Ահա թէ ինչպէս կը բացատրէ Ղազար Փարպեցի՝ Ս. Սահակայ մեռեալ մարմնոյն Մամիկոնէից ձեռօք յԱշտիշատ փոխադրուելուն մասին խօսելով՝ "տարան ի գաւառն Տարօնոյ, ի բնիկ գիւղն յիւր[եանց] սեպհական՝ յանուանեալ Աշտիշատ". (Փարպ. տպ. 1873, էջ 104:) Անմիջապէս աչքի կը զարնէ (Խորենացւոյ) կախում ունենալը: — Այն գաղափարը՝ զոր կ'ունենայ Տիգրան Ափրոդիտեայ անդրին կանգնելու Աշտիշատի մեհենին մէջ Հերակլեայ արձանին կողքին, եւ այսպէս երկու տարփաւորները միացընելու, ինքնին բնականապէս կը ծագի եւ կ'արդարանայ Ագաթանգեղեայ բնագրէն:

Գ. Վերն ըսինք որ կռոց անունները — ի բաց առեալ Բարշամէն դիցն, — յունական ձեւով. կը ներկայացընէ Մ. Խորենացի, եւ թէ այս ձեւերն ամենաճիշդ կերպով կը համապատասխանեն Ագաթանգեղեայ յունական թարգմանութեան հետ: Այսպիսի դէպք մը ա՛յնչափ աւելի տարօրինա՛կ բան մըն է, որչափ որ յիշեալ դից այս նոյնացմանց մէկ քանին շատ

խնդրական են։ Եթէ Մ. Խորենացի անընդ-միջաբար թարգմանած ըլլար անունները՝ ան-հնար էր որ Խորենացին այնպէս լիակատար հա-մաձայնութեան մը գար յանգէր։ Բաց աստի, եթէ միայն ի բաց առնունք այն տեղերն՝ որ մեր անդրիներուն կը վերաբերին ի Մերձուստ կամ ի Հեռուստ, ուրիշ որեւէ տեղ մը յունական դիք չի յիշատակեր Խորենացի, բայց միայն ուր իւր սուրիշ աղբերքը կ'ընդօրինակէ։ Դիոս եւ Ապո-ղոն ուրիշ որեւէ տեղ մը չեն գտնուիր իւր գրոց մէջ։ Արտեմիս եւ Ափրոդիտէ մի միայն անգամ մը յիշուած են (Գ, լգ՚) հետեւելով Մաղաղասայ։ Հեփեստոս՝ երկու անգամ միեւ-նոյն գլխուն մէջ (Ա, է՚) Եւսեբեայ «Քրոնիկոնին» հետեւելով. (Հտր. Ա, 58 եւն։) Միայն Աթե-նաս զարտուղութիւն մը կը ցուցընէ՝ Յուլիանու ինքնակալին թղթին մէջ կրկին երեւան գալով. (Գ, ժե։)

Եթէ ինքն իսկ Մովսէս Խորենացին չէ թարգմանած դից այս անունները, միայն երկու ենթադրութիւններ կը մնան՝ վերոյիշեալ հա-մաձայնութիւնը մեկնելու համար։ Կամ Մով-սիսի Խորենացւոյ՝ ուղղակի կամ անուղղակի ճամբով՝ ծանօթ էր Ագաթանգեղեայ յունա-րէն բնագիրն, որ ըստ ինքեան անկարելի բան մը չէ. եւ կամ Ագաթանգեղեայ հայ բնագիրը՝ զոր Խորենացի իւր աչքին առջեւ ունէր, դից կրկին անունները՝ թէ հայերէն եւ թէ յունա-րէն միանգամայն՝ կը ներկայացընէր։ Այսպիսի բնագրի մը գոյութիւնը չի կրնար այնպէս մէկէն

Digitized by Google

ի մէկ մերժուիլ։ Նաեւ մեզի այժմ ծանօթ Ագաթանգեղոսն ունի (էջ 607) "...Աստղկան դից ...ըստ յունականին որ է ինքն Աֆրոդիտէս„։ Փաւստոսի Բուզանդայ մէկ տեղն՝ ուր կը պատմուի Աշտիշատայ մեհենին կործանումն, որ տեղն ապահովապէս Ագաթանգեղոսէն է, կը կարդանք՝ "Կործանեաց զբագինսն մեհենիցն Հերա-կլէայ՝ այսինքն Վահագնի„. (Գ, ժգ. տպ. 1832 եւ 1889, էջ 37։) Ասոնք թերեւս վերջին մնացորդքն ըլլան Ագաթանգեղեայ հայերէն բնագրին հնագոյն խմբագրութեան մ'որ այժմ կորսուած է։

Այս զանազան դիտողութիններն՝ զորոնք ցայս վայր ներկայացուցինք, աւելի եւս կը շեշտեն յիշեալ կրկին յիշատակարաններուն ազգակցական նկարագիրը։ Ասկէ զատ կը ձգտին նաեւ ցուցընելու որ Մովսիսի Խորենացւոյ բնագիրը չէ հնագոյնը։ Ագաթանգեղոսի առաջնութիւնն արդէն ուրիշ կողմանէ ալ ակնյայտնի է։ Նաեւ առանց խօսելու այն դիտողութեանց մասին որոնք գրական պատմութեան կը վերաբերին, Ագաթանգեղեայ առաջնութիւնն ամէն տարակուսէ վեր է նոյն իսկ այն պարագայէն որ իւր՝ դից անուանց տուած կարգը պարզապէս այն ուղեգիծն է, զոր բռնեց Ս. Գրիգոր կռոց դէմ իւր ըրած երեք արշաւանաց ժամանակ, այսինքն՝

1. Վաղարշապատէն յԱրտաշատ.

2. Վաղարշապատէն ի Բարձր-Հայս.

3. Վաղարշապատէն ի Կեսարիա եւ անկէ դարձն Աշտիշատի վրայէն։



Digitized by Google

Մովսէս Խորենացի ալ նոյն կարգը կը պահէ. բայց Անահիտ-Արտեմիդայ կրկին մեհենին յիշատակութեան հանդիպելով՝ մին Արտաշատ եւ միւսը՝ Երէզ, կը ստիպուի Հայաստան բերել տալ Արտեմեայ կրկին արձանները, որոնց մին Փոքր-Ասիայէն բերուած ըլլայ, միւսը Ելլադայէն։ Նաեւ միակ այս պարագան կը բաւէր ապացուցանելու իւր պատմածին արուեստական ըլլալը։

Կրնանք իբրեւ ապացուցուած նկատել որ Մովսէս Խորենացի՝ իւր Հայաստան մուծուած յունական կռոց ցուցակն յօրինելու համար հետեւած է տաճարաց կործանման այն պատմութեան՝ զոր աւանդած է Ագաթանգեղոս։

Digitized by Google

## Դ.

Այն ժամանակի շրջանին՝ երբ կ'ապրէր Մովսէս Խորենացի, միայն շատ թերակատար գաղափար մը կրնար կազմուիլ Հայոց հնագոյն կրօնին մասին։ Աւանդութիւնն անհետ կորսուած էր։ Գրքերն՝ որ այն ատեն արդէն մեծ քանակութեամբ կը շրջէին, շատ քիչ կը խօսէին հնագոյն կրօններու մասին, ինչպէս նաեւ քիչ՝ օտար կրօններու նկատմամբ։ Միայն մէկ քանին կը պայքարէին Սասանեանց մազդեզականութեան դէմ։ Հնագոյն տաճարները նուիրուած էին նոր (քրիստոնէական) պաշտաման. հնագոյն տօները քրիստոնէացած։ Հայաստանի մէջն ալ ա՛յնպէս էր այս ամէն նկատմամբ՝ ինչպէս բոլոր միւս աշխարհներն, որ քրիստոնէութեան դարձան, ի բաց առեալ միայն Յունաստանն ու Հռովմն, ուր փայլուն եւ անեղծանելի գրականութիւն մը հնագոյն պաշտամանց գոնէ յիշատակը կը պահէր։

Անկարելի չէ որ Ագաթանգեղեայ մեհեաններուն կործանման մասին պատմածը՝ նաեւ այն ատեն միակ բնագիրն էր, որ կրնար Մովսէսի Խորենացւոյ տեղեկութիւններ մատակարարել հայ ազգային հեթանոսական կրօնից մասին, ինչպէս որ նոյնը նաեւ ցայսօր միակ խարիսխն է

Digitized by Google

ամէն հետազօտութեան հայկական ամենադից կաճառին նկատմամբ։ Ինչ որ ալ ըլլայ՝ Մովսիսի Խորենացւոյ ծանօթ էր այն գրուածքն եւ անկէ ալ օգտուած է։ Այն յիշատակարանն իրեն մատակարարեց հին մեհեաններուն եւ անոնց մէջ պաշտուած կռոց տեսակ մը պաշտօնական ցուցակը։ Մ. Խորենացի քաղեց առաւ այս ցուցակն ամենամեծ խնամքով[1], բայց իւր “Պատմութեան„ մէջ չմուծեց զայն անոր ժամանակագրական ճիշդ տեղը։ Տեղ մ'ալ ակնարկութիւն չենք գտներ այն դից, զորոնք կը պաշտէր Տրդատ, եւ ոչ բառ մ'ըսած է մեհեաններուն կործանման մասին։ Այլուստ գիտենք թէ ինչ բան է Մ. Խորենացւոյ գրքին այն մասին տարօրինակ թերութիւնն, ուր պէտք պատմուէր Հայաստանի դարձն ի քրիստոնէութիւն։

Ագաթանգեղեայ գրքէն քաղուած տեղեկութիւնները գործածուեցան — ներուի այս բացատրութեանս — յետադարձաբար (régressivement), այսինքն՝ անոնք գործածուեցան այն կռոց՝ ծագումն ու Հայաստան փոխադրուիլը պատմելու զորոնք Ս. Գրիգոր տապալեց կործանեց։

---

[1] Ասոր մասին կրնայ գաղափար ունեցուիլ հետեւեալ մանրամասնութենէն։ Ըստ Մ. Խորենացւոյ Արտաշատի երկու դիքն են՝ ա. Արտեմիս-Անահիտ. բ. Ապողոն-Տիր. բայց այդ մեհեանները կործանեցան հակառակ կարգաւ, այսինքն՝ ա Տիր, բ Անահիտ։ Սակայն Մ. Խորենացի անունները յառաջ բերած է ճիշդ այնպէս ինչպէս որ շարուած են Ագաթանգեղեայ բնագրին մէջ. Տրդատ ճամբայ կ'ելլէ կործանելու Անահտայ մեհեանը. Բայց ճամբան կը հանդիպի Տիր դիցի մեհեանին եւ կը կործանէ զայն նախ քան Անահտայ մեհեանը. (տես Ագաթ. էջ 584։)

Digitized by Google

Այն ատեն կարելի եղաւ գիտնալ անոնց ամէն մէկին ուստի ծագած եկած ըլլալը։ Արձանները յաղթութեան ճշմարիտ նշանակներ էին, չքեղ աւարներ, որոնցմով իրաւունք ունէին Հայք պարծելու. վասն զի միեւնոյն ժամանակ արդիւնք եւ ապացոյց էին իրենց արքայից աշխարհակալութեանց ի Փոքր Ասիա, Յունաստան եւ Միջագետք։ Մ. Խորենացի ասով թերեւս կ'ուզէր նաեւ նշանակել հայկական կռապաշտութեան յունական ծագումը. արդեամբք ալ տեղ մը բացորոշ չ'ըսեր թէ անդրիները կանգնուեցան յառաջուընէ գոյութիւն ունեցող մեհեաններու մէջ. մանաւանդ թէ աւելի հակառակը կը հետեւցուի այն եղանակէն, որով նախնաբար Անի պահեստի դրուած կուռքերը բաշխուեցան մերձակայ աւանները։ Սակայն այս վերջին խնդիրը մեր հետազօտութեանց նիւթէն դուրս կը մնայ։

Եթէ՝ ինչպէս որ կարծենք թէ այժմ ապացուցինք, յունական կռոց Հայաստան մուծուիլը որեւէ իրական դէպքի մը չի համապատասխաներ, այլ թէ ընդհակառակն Մ. Խորենացւոյ խորհրդածող երեւակայութեան արդիւնքն է, իւր գրոց շատ մը գլուխներուն պատմական արժէքը վտանգուած կ'ըլլայ։ Այսպէս այն ամէնն որ կը պատմուի յիշեալ կռոց Արմաւրէն Բագարան եւ Բագարանէն Արտաշատ փոխադրուելուն նկատմամբ՝ ուրիշ բան չի կրնար ըլլալ բայց եթէ զարգացում նախնական կեղծիքին։ Ասով աւելի հաստատութիւն կ'առնուն այն տարակոյսներն՝ որ շատ մ'ուրիշ պատ-

Digitized by Google

ճառներով արդէն ծագած էին Երուանդայ եւ Արտաշիսի Բ.ի թագաւորութեան պատմական ըլլալուն նկատմամբ. (գիրք Բ, գլ. լէ—կ։) Արտաշէս Բ. իւր Մաժան որդին անուանած էր քրմապետ Արամազդայ յԱնի (գլ. ծգ), եւ նուիրակութիւն մը խաւրած յԵրէզ՝ Արտեմիսէն խնդրելու առողջութիւն եւ երկայն կեանք. (գլ. կ։)

Այս երկու թագաւորաց իշխանութեան դէպքերը կը պատմուին մեզի Անւոյ քրմի մը ձոխութեամբն՝ Ողիւմպ (Olympius) անուն, որ գրած ըլլայ մեհենաց պատմութիւն մը («Մեհենական պատմութիւնք»[1], Բ, գլ. խը) եւ որուն մասին ուրիշ տեղ մ՚ալ խօսք չ՚ըլլար։ Անի պաշտուած դիքն էր Արամազդ, այսինքն՝ Մովսիսի Խորենացւոյ համար ողիմպիական Զեւս

---

1 Այս առաջին անգամ չէ որ Մ. Խորենացի կը խօսի Մեհենական պատմութեանց վրայ, ուր պատմուած ըլլան թագաւորաց գործերը։ Այս «Մեհենական պատմութիւնք» կային արդէն Եդեսիոյ դիւանին մէջ (Բ, ժ), որոնք հոն փոխադրուած էին Մծբին քաղաքէն (Բ, իէ) եւ Պոնտոսի Սինոպ քաղաքէն (Բ, լը։) Նախընթաց հրատարակութեան մը մէջ (La légende d'Abgar, p. 361 ff.) ցուցուցինք որ կեղծակարծ յիշատակարանքը նկատելու է իբրեւ երեւակայական աղբիւրներ։ Անկէ ետքն եկած ենք այն համոզման որ «Մեհենական պատմութեանց» գաղափարը քաղած է Մ. Խորենացի Եւսեբեայ Քրոնիկոն մատենէն՝ զոր այնչափ յաճախ կը գործածէ։ Մանեթոն գրեց «ի Մեհենական պատմութեանցն», ուր յոյն բնագիրն ունի՝ ἐκ τῶν ἱερῶν (Քրոնիկոն, Ա, 222)։ — «Զորոց ամենեցուն իսկ (այսինքն՝ զԹագաւորացն) [illegible] ունէին զմատեան ի Մեհենականս», ուր յոյնն է՝ εἶχον ἀναγραφὰς ἐν ταῖς ἱεραῖς βίβλοις. (անդ, Ա, 199.) տես նաեւ անդ՝ Ա, 208։

(Jupiter Olympien) եւ այս հաւանօրէն կը մեկնէ քրմին անունը: Իսկ «Ուղիւպ» քրմին գրքին գալով՝ Մ. Խորենացի չ'ըսեր որ իւր ձեռքն ունեցած ըլլայ զայն, եւ ո՛չ դէպք մը կը յիշէ յատկապէս իբրեւ անկէ փոխ առնուած: Աւելի լաւ տեղեկութիւն կու տայ մեզի ուրիշ տեղ մը (գլ. կզ), ուր կը կարդանք թէ Բարդեծան Ասորի «եմուտ նա յամուրն Անի, եւ ընթերցեալ ոլիմպիական պաշտամունքին (բնականապէս Ուղիւպի), յորում եւ զգործս թագաւորացն, յաւելլով իւր եւ որ ինչ առ իւրեաւն, եւ փոխեաց զամենայն ի լեզու ասորի, որ եւ ապա անտի յեղաւ ի յոյն բան[1]»: Մ. Խորենացւոյ ծանօթ էր ասորի հերեսապետին գործը, եւ անկէ քաղուածք մ'ալ ըրած է հետեւեալ խօսքերով (անդ)՝ «Ցորում պատմէ (Բարդեծան) ի Ոլիմպիական պաշտամունքեանց (ձռգր. «պաշտամանց[2]»), վերջին Տիգրանայ արքայի Հայոց պատուեալ զգերեզման եղբօրն իւրոյ Մաժանայ (գլ. ծա, ծգ, ծե) քրմապետի ի Բագնացն աւանի (= Բագուան[3]) որ ի Բագրեւանդ գաւառի,

---

1 Ասորի խմբագրութեան եւ ասորականէ յունարէնի թարգմանութեան այս յիշատակութիւնը փոխ առնուած է Եւսեբիոսէն (Պատմ. Եկեղ. Դ, Լ. Հայ թրգմ. տպ. Վենետ. էջ 312), որ Խորենացւոյ Բ. կզ գլխուն մեծ մասին աղբիւրն է: Սակայն Եւսեբեայ խօսքն է Բարդեծանայ գրուածոց մասին, որոնց մէջ ամենեւին չի յիշուիր «Մեհենական Պատմութիւն» մը:

2 Բնագրին մէջ կարդալու է «Պաշտամունքեանց», փոխանակ «պաշտամանց» ընթերցման:

3 Բագաւան կամ Բագուան (դիցաւան, տես Hübschmann, Armenische Grammatik, p. 113:) Ագա-

Digitized by Google

բագին ի վերայ գերեզմանին շինեալ՝ զի ի զոհիցն ամենայն անցաւորք վայելեսցեն, եւ ընդունիցին հեւրք երեկօթիւք։ Յորում եւ զկնի Վաղարշ տօն աշխարհախումբ կարգեաց ի սկզբան ամի նորոյ, ի մուտն Նաւասարդի։„

Ա՜նհնար է այս տօնին մէջ՝ որ իբր թէ հաստատուած է Վաղարշէն, չճանչնալ վերըստին այն տօնն որուն տեղ ուրիշ մը կարգեց Ս. Գրիգոր, Տրդատայ մկրտութենէն ետքը, ի յիշատակ այն սրբոց մարտիրոսաց՝ որոնց նշխարքները բերած էր Կեսարիայէն։ Ստոյգ է՝ Ագաթանգեղեայ այն տեղը (էջ 623) դժուարութիւններ կը յարուցանէ մեկնութեան։ Ոմանք, ինչպէս Լանգլուա, հոն յիշուած կը գտնեն Ամանոր (Նոր-տարի) դիք մը. ուրիշները՝ ինչպէս Դիւլորիէ, Գելցեր[1] եւն, հոն կը տեսնեն Վանատուր (ապաստանարան տուող) դիք մը։ Իմին թէ "Ամանոր*„ եւ թէ "Վանատուր„ դիք կը գտնէր միանգամայն, բայց երկու դիքն կը նոյնացընէր։

---

Թանգեղոս (էջ 612) կ'ըսէ պարթեւական է անունս եւ անոր համազօրն է հայերէն "Դիցաւան`„ դից կամ կռոց աւան. (Հմմտ. "Բագուան, որ անուանեալ կոչի ի պարթեւական լեզուէն Դիցաւան„։) Մովսէս Խորենացի նոյնը կը փոխադրէ հոս "Բագնեաց աւան„ (բագիններու կամ սեղաններու աւան.) Հմմտ. Բ, ծե. Գ, կէ։

[1] Հմմտ. H. Gelzer, Zur arm. Götterlehre, p. 132 ff.

* Այս տեղն է՝ "Եւ զյիշատակս վկայիցն ընդելոց ժամադրեաց տօն մեծ հռչակել, յառաջագոյն կարծեալ սնոտեացն պաշտաման ի ժամանակի դիցն Ամանորայ ամենաբեր նորոց պտղոց տօնից հիւրընկալ դիցն Վանատրի, զոր յառաջագոյն իսկ ի նմին տեղւոջ պաշտէին՝ յուրախութեան Նաւասարդ աւուր։„

Digitized by Google

պէտք է խոստովանիլ որ բնագիրն՝ իւր ներկայ վիճակին մէջ՝ կրնայ զանազան կերպով թարգմանուիլ։ Մովսէս Խորենացի եւ Ագաթանգեղեայ յոյն թարգմանն ուրիշ կերպ հասկըցած են. իրենք առանց տարակուսի իրենց աչքին առջեւն ունէին բնագիր մը որ քիչ մը տարբեր էր ներկայէն։ Ջիարդ եւ իցէ, Բարդեծանայ "մեհենական պատմութեանց„ կոչումը յառաջ եկած է Ագաթանգեղեայ այն տեղէն, զոր նշանակեցինք։ Աւարտելով մեր խօսքն՝ հոս ալ կը հանդիպինք այնպիսի դէպքի մ'որ համանմանն է յունական դից Հայաստան մուծուելուն, եւ կը հաստատենք Մովսիսի Խորենացւոյ՝ աղբիւրները Վերադարձական (régressif) գործածելուն նոր դէպք մ'ալ։




ՀԵԹԱՆՈՍ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՈՒԹ ՄԵՀԵԱՆՆԵՐԸ:

# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

Ա. Գալէմքեարեան Հ. Գրիգորիս Վ., Ուսումնասիրութիւնք Լեհահայոց դատաստանագրոյն: 1. Պիշոֆ, Լեհահայոց հին իրաւունքը: 2. Գոշէր. Իրաւունք Հայոց: 1890: 8° Երես՝ 85+59: Ֆր. 1.25

Բ. Մէնէվիշեան Հ. Գաբրիէլ, Ազգաբանութիւն ազնուական զարմին Տիւզեանց. (պատկերազարդ:) 1890: 8° Երես՝ 50 Ֆր. 1.—

Գ. Տաշեան Հ. Յակովբոս, Ագաթանգեղոս առ Գէորգայ ասորի եպիսկոպոսին եւ ուսումնասիրութիւն Ագաթանգեղեայ գրոց: 1891: 8° Երես՝ ԺԱ+159: Ֆր. 1.25

Դ. Դեմետրիոս Տաձի Արեւելեան Հայք ի Պուքովինա: Թրգմ. Հ. Գ. Վ. Գալէմքեարեան: 1891: 8° Երես՝ 79: Ֆր. —.85

Ե. Տաշեան Հ. Յակովբոս Վ., Ուսումնասիրութիւնք Ստոյն-Կալիսթենեայ վարուց Աղեքսանդրի. 1892: 8° Երես՝ Դ+272: Ֆր. 3.—

Զ. Ալշպէր Տըրվշէ եւ Գ. Փիսոն, Ուղեւորութիւն ի Փոքր Ասիա: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1892: 8° Երես՝ 82: Ֆր. 1.—

Է. Մառ Նիկ., Ամառնային ուղեւորութիւնից դէպ ի Հայս: Թրգմ. Ոնոփրիոս Անոփեան: 1892: 8° Երես՝ 89: Ֆր. 1.25

Ը. Գարիէր Ա., Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ: Հտ. Ա.: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1893: 8° Երես՝ Ժ+51: Ֆր. 1.—

Թ. Գալէմքեարեան Հ. Գրիգորիս Վ., Պատմութիւն հայ լրագրութեան: Հտ. Ա. 1794–1860: (1 լուսանկարով:) 1893: 8° Երես՝ 232. Ֆր. 2.50

Digitized by Google

Ժ. Կոնիբիր Փր. Կ., Քննութիւնք զրոց Դաւթի Անյաղթի: Թրգմ. եւ յաւ. Հ. Ց. Վ. Տաշեան: 1893: 8° Երես Է+92: Փր. 1.25

ԺԱ. Գովրիկեան Հ. Գրիգոր Վ., Հայք յԵղիսաբեթուպոլիս Դրանսիլուանիոյ 1680—1779: (1 զըն-կատիպ.) 1893: 8° Երես Ժ+533: Փր. 4.50

ԺԲ. Խաչատեան Գր., Զենոբ Գլակ, Համեմատական ուսումնասիրութիւն: 1893: 8° Երես 78: Փր. 1.—

ԺԳ. Տէր-Մովսիսեան Փարսադան, Հայ գիւղական տունը: Թրգմ. Հ. Բ. Վ. Պիլէզիկճեան: (6 տախտակ՝ 55 պատկ.:) 1894: 8° Երես 103 Փր. 2.—

ԺԴ. Գարիէր Ա., Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ. Հտ. Բ. կամ Յաւելուած: Թրգմ. Հ. Ց. Վ. Տաշեան: 1894: 8° Երես ԺԱ+43: Փր. 1.—

ԺԵ. Տաշեան Հ. Ց. Վ., Ուսումնասիրութիւնք հայերէն փոխառեալ բառից: Ա. Հ. Հիւպշման, Սեմական փոխառեալ բառեր հին հայերէնի մէջ: Բ. Փրոքէլման Կ., Յունական փոխառեալ բառեր հայերէնի մէջ: Գ. Հ. Հիւպշման, Հայկական Յատուկ անուանք: 1894: 8° Երես 9+145: Փր. 2.—

ԺԶ. Տաշեան Հ. Յակովբոս Վ., Մատենագրական մանր ուսումնասիրութիւնք: Հտ. Ա. Ա—Զ: 1895: 3° Երես ԺԲ+294: Փր. 3.60

ԺԷ. Տաշեան Հ. Յակովբոս Վ., Հայկական աշխատասիրութիւնք հայագէտ Պ. Փէթթէրի, ի մի ամփոփուած եւ թարգմանուած հանդերձ ծանօթութեամբք: 1895: 8° Երես 202: Փր. 2.50

ԺԸ. Տիռրեան Կ., Սեւ ծովու ռուսական եզերքը: 1895: 8° Երես 192: Փր. 2.—

ԺԹ. Գովրիկեան Հ. Գրիգոր Վ., Դրանսիլուանիոյ Հայոց Մետրապոլիսը կամ Նկարագիր Կերլա Հայաքաղաքի ի գիր եւ ի պատկերս: 1896: 8° Երես Թ+352: Փր. 3.60

Ի. Տաշեան Հ. Յակովբոս Վ., Վարդապետութիւն առաքելոց անվաւերական կանոնաց մատեանը. Թուղթ Յակոբայ առ Կոդրատոս եւ Կանոնք Թադէի: 1896: 8° Երես Թ+442: Փր. 6.—

ԻԱ. Տոմաշէկ Վ., Սասուն եւ Տիգրիսի աղբերաց սահմանները: Պատմական եւ տեղագրական հե-

Digitized by Google

տպագրութիւն: Մասն Առաջին՝ Պատմական տեղեկութիւնք Սասնոյ վրայ: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան: 1896: 8° Երես՝ Է+62: Փր. 1.—

ԻԲ. Կարրիէր Ա., Աբգարու զրոյցը Մովսէս Խորենացւոյ Պատմութեան մէջ. Թրգմ. Հ. Գաբրիէլ Վ. Մէնէվիշեան: 1897. 8° էջ ԺԶ+107: Փր. 1.50

ԻԳ. Յովնանեան Հ. Ղ., Հետազօտութիւնք Նախնեաց ռամկօրէնի վրայ: Ուսումնասիրութիւնք եւ քաղուածներ: Մասն Ա. Ռամկօրէն մատենագրութիւնք: Տետր Ա: 1897, 8° էջ Ը+272: Փր. 4.—

ԻԴ. Յովնանեան Հ. Ղ., Հետազօտութիւնք Նախնեաց ռամկօրէնի եւն: Տետր Բ: 1897: 8° էջ Ա—Ը+273—522: Փր. 3.—

ԻԵ. Գէլցէր Հ., Համառօտ պատմութիւն Հայոց: Թրգմ. Հ. Գր. Վ. Գալէմքեարեան: Յաւելուածք թարգմանչին՝ 1. Ցանկ 1895—1897 Հայոց կոտորածներու առթիւ լոյս տեսած գրքերու: 2. Գաւազանագիրք Կաթողիկոսաց եւ Պատրիարքաց Հայոց: 1897 8° էջ Ը+130: Փր. 1.50

ԻԶ. Մէնէվիշեան Հ. Գաբրիէլ Վ., Գիրք (կամ յօդուած) գրելու արուեստը: Նորուս հեղինակներուն ուղղեալ քանի մը կարեւոր ակնարկութիւններ: Յաւելուած՝ Գիրք կարդալու արուեստը: 1898: 8° էջ Է+123: Փր 1.25

ԻԷ. Խալաթեան Գր., Մ. Խորենացու Նորագոյն աղբիւրների մասին քննադատական ուսումնասիրութիւնք: 1898: 8°, 56 էջ: Փր. 1.—

ԻԸ. Տաշեան Հ. Յ., Ակնարկ մը հայ հնագրութեան վրայ: Ուսումնասիրութիւն Հայոց գրչութեան արուեստին: (10 զնկատիպ պատկերով): 1898: 8° ԺԱ+202 էջ: Փր. 2.50

ԻԹ. Դաղբաշեան Յ., Փաւստոս Բիւզանդացի եւ իւր պատմութեան խարդախողը: Մ. Խորենացու աղբիւրների ուսումնասիրութիւն: 1898, 8° 175 էջ: Փր. 2.50

Լ. Մսերեանց Լ., Հայերէն բարբառախօսութիւն: Թրգմ. ի ռուսերէնէ Հ. Գ. Վ. Մէնէվիշեան: 1899, 8° Երես՝ Է+26: Փր. —.50

Digitized by Google

ԼԱ. *Քօսեան Հ. Յ., Հայք ի Զմիւռնիա եւ ի շրջակայս: Հատոր Ա. Զմիւռնիա եւ Հայք: 1899: 8 Երես՝ ԺԲ+369:* *Ֆր. 5.—*

ԼԲ. *Քօսեան Հ. Յ., Հայք ի Զմիւռնիա եւ ի շրջակայս: Հատոր Բ. Զմիւռնիոյ միջակին գլխաւոր քաղաքներն եւ Հայք: 1899: 8° Երես՝ Ժ+161:* *Ֆր. 2.50*

ԼԳ. *Գովրիկեան Հ. Գրիգոր Վ., Հայք յԵղիսաբեթուպոլիս Դրանսիլուանիոյ. Բ. Հատոր 1780—1825. (1 զնկատիպ:) 1899 8°. Երես՝ Ը+558:* *Ֆր. 5.—*

ԼԴ. *Գազանճեան Յ., Եւդոկիոյ Հայոց գաւառաբարբառը: 1899: 8° Երես՝ Ը+124:* *Ֆր. 1.—*

ԼԵ. *Կարիէր Ա., Հեթանոս Հայաստանի ութ մեհեաններն Ագաթանգեղոսի եւ Մ. Խորենացւոյ համեմատ: Թրգմ. Հ. Յակովբոս Վ. Տաշեան: (1 աշխարհագրկն տախտակով:) 1899: 8° Երես՝ 48:* *Ֆր. —.75*

---

Digitized by Google

